## Իտալիա պիտի գրաւէ ամբողջ Եթովպիան

Հռոմի պաշտօնական շրջանակներուն մէջ այլեւս չեն ծածկեր թէ բոլոր միջին ծրագիրներուն ժամանակը անցած է։ Նոյն իսկ կասկածելի կը թուի որ Իտալիա ընդունի հոգատարութիւն մը Ազգերու Դաշնակցութեան հովանաւորութեամբ։ Բոլոր երեւոյթները կը հաստատեն թէ Իտալիոյ ծրագիրն է Եթովպիոյ ամբողջական գրաւումը, կատարեալ զինաթափութեամբ։ Թերթերը բացէ ի բաց կը խօսին այս մասին, շեշտելով թէ Իտալիա պարտաւոր է ամէն բանէ առաջ ամրապնդել իր ապահովութիւնը արեւելեան Ափրիկէի մէջ։ Առանց վերջնական եւ ամբողջական նուաճման, Եթովպիա պիտի շարունակէ, կ'ըսեն, քառասուն տարուան խաղերը։ Իտալիա չի հանդուրժեր որ նոյնիսկ դէպի ծով ելք մը տրուի Եթովպիոյ, քանի որ առով պիտի դիւրանայ զէնքի փոխադրութիւնը։

Միւս կողմէ Հռոմի մէջ կը պնդեն թէ Եթովպիոյ բոլոր կենսական կէտերը Իտալիոյ ձեռքը պիտի իյնան շատ չանցած եւ թէ հաշտեցական ողբերգութեան վերջին արարն է որ կը կատարուի։ Վերջնական վախճանին համար Իտալիա վճռապէս պատրաստ է ամէն բանի։ Այս հոգեբանութեան մէջ Անգլիոյ թռնած դիրքը ուրիշ բանի չի ծառայեր եթէ ոչ պատերազմը երկարաձգելու։ Իտալական շրջանակները դիտել կուտան թէ անգլիական քաղաքականութիւնը չունի որ եւ է գործնական հանգամանք, հիմնուած չըլլալով որ եւ է իրականութեան վրայ, հետեւաբար ան է պատասխանատուն թափած արիւնին։ Լոնտոնէն Ատտիս-Ապէպա մէկ քառ կը բաւէ, որպէսզի զինադադար հռչակուի 48 ժամէն։ Եթովպիոյ տրուած բարոյական եւ նիւթական աջակցութիւնը պարզապէս կը ծառայէ պատերազմը երկարաձգելու եւ Նէկիւսը վտանգաւոր ինքնախաբութեանց մղելու։ Այս հանգամանքներուն մէջ զարմանալի է որ Ազգերու Դաշնակցութիւնը կը յամառի իր օրկաններն ու գրասենեակները դնել ի սպաս անյոյս դատի մը։ Կը թուի թէ Ժընեւի մէջ դեռ պիտի շարունակեն վիճաբանիլ, երբ այլեւս գոյութիւն չպիտի ունենայ անկախ Եթովպիա մը, որպէսզի պաշտպանեն։

## Լոնտոնի Գերմանական դեսպանը յանկարծամահ

Ուրբաթ առտու յանկարծամահ եղաւ Լոնտոնի գերմանական դեսպան Ֆոն Հէօշ, իր սենեակին մէջ, երբ կը հագուէր։ Անկողինէն ելած էր կատարելապէս առողջ, սովորականին պէս, բայց յանկարծ տկարութիւն մը զգալով գետին ինկաւ եւ մեռաւ քանի մը վայրկեանէն։ Իր անձնական քարտուղարը, որ քովն էր, անմիջապէս հեռաձայնեց դեսպանատան խորհրդական իշխան Պիզմարքի, ինչպէս եւ միւս բոլոր պաշտօնեաներուն։ Լուրը առաջին լրողներէն մէկը եղաւ Խոտ. Բիր Թագաւորը, արտաքին նախարարութեան միջոցաւ։ Բազմաթիւ անգլիացի պետական մարդիկ, որոնց մէջ կը գտնուէին Մաքտոնըլտ եւ Սըր Ս. Հօր, խորապէս կ'ողբան հանգուցեալ դեսպանին մահը, գնահատելով անոր արժանիքները։ Լուրը մեծ յուզում պատճառեց Պերլինի մէջ, ուր կը զգան թէ մեծ պարապ մը կը բացուի այս փորձ դիւանագէտին մահով։ Բոլորն ալ կը խոստովանին թէ Լոնտոնի դեսպան նշանակուելէն ի վեր մեծապէս բարւոքած էին Անգլիոյ եւ Գերմանիոյ յարաբերութիւնները, ինչպէս անկէ առաջ, Ֆրանսայի հետ։ Մանաւանդ վերջին երկու ամիսներու ընթացքին դեսպանը շատ մեծ ծառայութիւններ մատոյց, այնքան տաժանելի բանակցութեանց առթիւ։

Ֆոն Հէօշ ծնած էր 1881ին, Տրէզտէնի մէջ։ Համալսարանական շրջանը աւարտելէ յետոյ իբրեւ իրաւագէտ, մտաւ դիւանագիտական ասպարէզը. յաջորդաբար պաշտօններ վարելով Փէքինի (1907), Փարիզի (1909), Մատրիտի (1910), Լոնտոնի (1911) եւ Սոֆիայի (1915) մէջ։ Քանի մը ամիս իբրեւ սպայ ծառայելէ յետոյ, նշանակուեցաւ կցորդ Պոլսոյ գերման դեսպանատան (1916), յետոյ Պերլին կանչուեցաւ իբրեւ անմիջական գործակիցը արտաքին նախարարին։ Դարձեալ դիւանագիտական պաշտօններ վարելէ յետոյ 1918—1921, դրկուեցաւ Փարիզ, իբրեւ դեսպանատան խորհրդական, իսկ դեսպան նշանակուեցաւ 1924ին։ Այդ հանգամանքով գործօն դեր կատարեց Լոքառնոյի դաշինքին բանակցութեանց առթին։ 1932ին նշանակուեցաւ Լոնտոնի դեսպան, մնալով մինչեւ իր մահը։ Լոնտոնի, ինչպէս Փարիզի մէջ մեծ յարգ կը վայելէր իր աչնուապետական կենցաղավարութեամբ եւ իր սահղծած յարաբերութեանց շնորհիւ էր որ Ֆոն Ռիպպէնթրոփ՝ Հիթլէրի լիազօրը յաջողեցաւ դեր կատարել Մեծն Բրիտանիոյ բարձր շրջանակներուն մէջ։ Հաւանական է որ Ռիպպէնթրոփ Լոնտոն վերադառնայ, վարելու համար գործերը։ Կ'ըսեն թէ Ֆոն Հէօշ 100 ձեռք հագուստ կը պահէր, միշտ պատրաստ՝ յարմարելու բոլոր առիթներուն։

### ՁԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՀՍԿԱՅ ՑԷՓԼԻՆԸ, « Հինտէնպուրկ», որ փորձարկէր բռնուած էր Ֆրիտրիխսհաֆէնի վրայ, յաջողեցաւ իր կայանը (Գերմանիա) հասնիլ անցնելով Ֆրանսայի վրայէն։ Յանձնարուած մեքենան նորագոյն էին օդին մէջ։ Ռօնի հովիտէն անցած առեն ցէփլինը (դեկաւոր օդապարիկ) կ'ընթանար 1200 մեթր բարձրութեամբ։

ՆՈՐ ԴԷՊՔԵՐ պատահեցան Խ. Միութեան եւ Մանչուրիոյ սահմանին վրայ։ Մայր. Արեւելքի խորհրդային հրամանատարութիւնը օգնական ուժ խնդրեց։ Ճափոնական թերթերը կը գրեն թէ մարաջախտ Պլիւխէրի հրամանին տակ կը գտնուին 200.000 զինուորներ։

ՌՈՒՄԱՆԻՈՅ նախորդ վարչապետ Միհալաքէ ճառի մը մէջ յայտնեց թէ ռումանական 60 թերթեր նպաստ կը ստանան հիթլէրական կառավարութենէն։



Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameme, PARIS (13)









